## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 9
ՄԱՅԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

### ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՊԱՏԵՐԱԶՄԻ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՐՑԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԱՎԱՆՏՅՈՒՐԻՍՏԱԿԱՆ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՎՏԱՆԳԸ

*Բռնելով բանավեճի, իսկ այնուհետև ՍՄԿՊ-ի և մարքսիստական-լենինյան մյուս պարտիաների դեմ բացահայտ քաղաքական պայքարի ուղին, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն առանձնահատուկ եռանդով գրոհեցին պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի Մոսկվայի խորհրդակցությունների դրույթների վրա։*

*Մարքսիստ-լենինյանների համար այբուբենական ճշմարտություն է այն պահանջը, որ անհրաժեշտ է հաշվի առնել այդ հարցերի փոխադարձ կապն ու փոխադարձ կախումը՝ հատկապես արդի փուլում։ Մարքսիստական-լենինյան պարտիաները հետևողական պայքարը խաղաղության համար դիտում են ոչ միայն որպես մարդկության հանդեպ իրենց պատմական միսիայի կատարում՝ կանխել համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը, այլև որպես սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցման, կապիտալիստական երկրների պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ծավալման կարևորագույն պայման։*

*Իսկ չինական տեսաբանները, հակառակ մարքսիստական-լենինյան ուսմունքի և կոմունիստական պար-*

տիաների համաձայնեցված գծի, հակառակ ռեալ կյանքի փաստերի, փորձում են արհեստականորեն իրարից բաժանել միասնական հասարակական պրոցեսի երկու երևույթներ՝ նրանք պայքարը խաղաղության համար հակադրում են ռևոլյուցիոն շարժմանը։ Ըստ նրանց սխեմայի այնպես է ստացվում, որ ով պայքարում է խաղաղության համար, համաշխարհային պատերազմը կանխելու համար, նա ռևոլյուցիայի դեմ է, նա խոչընդոտում է ռևոլյուցիոն պայքարը։ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները միայն իրենց և իրենց համախոհներին են ռևոլյուցիոներ հայտարարում։ Միևնույն ժամանակ նրանք սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան կուրսի դիրքերում կանգնած գործիչների, ամբողջ պարտիաների, ըստ էության ամբողջ կոմունիստական շարժման վրա են հարձակվում «իմպերիալիզմի առջև կապիտուլյացիայի ենթարկվելու», «ռևոլյուցիոն հեռանկարը կորցնելու» և այլ հրեշավոր մեղադրանքներով։

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները հասնում են այնտեղ, որ պնդում են, թե պատերազմն ընդունելի է և նույնիսկ, ըստ էության, կապիտալիզմի ու սոցիալիզմի հակասությունները լուծելու միակ միջոցն է։ Չինական ղեկավարների այդ գիծը հղի է ամենածանր հետևանքներով, քանի որ այսօր մեր գործի բախտը, ժողովուրդների բախտը վճռականապես կախված է պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում կոմունիստական շարժման ստրատեգիական ու տակտիկական ճիշտ դիրքորոշումների հետևողական իրականացումից։

Չինական պրոպագանդան, օրինակ, անդադար մասսայականացնում է Մաո Ցզե-դունի այսպիսի արտահայտությունները. «պատերազմը, որ կմղի մարդկության ճնշող մեծամասնությունը... կդառնա մի կամուրջ, որով մարդկությունը կփոխադրվի պատմական նոր դարաշրջան», «աշխարհը կարելի է վերակառուցել միայն հրացանի օգնությամբ». «մենք պատերազմի ոչնչացման կողմնակից ենք, մեզ պատերազմ պետք չէ, բայց պատերազմը կարելի է ոչնչացնել միայն պատերազմի միջոցով»։

Այս արտահայտությունները վերաբերում են Չինաստանում քաղաքացիական-պատերազմի ժամանակաշրջանին՝ 30-ական թվականներին։ Այդ ժամանակից անցել է գրեթե երեք տասնամյակ։ Աշխարհում արմատական փոփոխություններ են տեղի ունեցել։ Ինչպես հայտնի է, այդ փոփոխությունների վերլուծությունը, միջազգային ասպարեզում ուժերի նոր հարաբերակցության վերլուծությունը մարքսիստական-լենինյան պարտիաներին թույլ է տվել կարևոր եզրակացություններ անել այն մասին, որ համաշխարհային պատերազմը կարելի է կանխել դեռ նախքան ամբողջ աշխարհում սոցիալիզմի լիակատար հաղթանակը։ Պատերազմի կանխման խնդիրը հատկապես կենսական է դարձել այն պատճառով, որ ստեղծվել է մարդկության պատմության մեջ ամենաավերիչ զենքը, կուտակվել են այդ զենքի այնպիսի պաշարներ, որոնց գործադրումը անթիվ աղետներ կպատճառեր բոլոր ժողովուրդներին։

Չցանկանալով հաշվի նստել այս ամենի հետ և լիակատար անպատասխանատվություն ցուցաբերելով խաղաղության ճակատագրի, հետևապես նաև միջազգային պրոլետարիատի և ազգային-ազատագրական շարժման նվաճումների ճակատագրի նկատմամբ, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները շարունակում են պնդել, թե միջուկային ռումբը «թղթե վագր» է և թե իբր այն նոր ոչինչ չի մտցնում պատերազմի ու խաղաղության վերաբերյալ հարցադրման մեջ։ Ավելին, Մաո Ցզե-դունը 1957 թվականի Մոսկվայի խորհրդակցությունում փորձում էր ապացուցել, թե համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի դեպքում սոցիալիզմի համար մղվող պայքարի գործը նույնիսկ կշահի։ Այդ կոնցեպցիան ավելի պարզորոշ կերպով է արտահայտված Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի հավանությանն արժանացած և նրա կողմից պրոպագանդվող «Կեցցե՛ լենինիզմը» ժողովածուի մեջ։ «Հաղթանակած ժողովուրդը,— ասված է այդտեղ,— կործանված իմպերիալիզմի փլատակների վրա շատ արագ տեմպերով կստեղծի հազար անգամ ավելի հիանալի ապագա»։

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը դեռ 1918 թվականին նշել է, որ համաշխարհային պատերազմը, որի ժամանակ տեխնիկայի հզոր նվաճումները այնպիսի եռանդով են կիրառվում միլիոնավոր մարդկային կյանքերի մասսայական բնաջնջման համար, ոչ միայն մե-





ծագույն հանցագործություն է, այլև կարող է հասցնել «մարդկային հասարակության գոյության բուն պայմանների խախտմանը» (Երկեր, հատ. 27, էջ 524—525)։ Համաշխարհային պատերազմը պետք չէ սոցիալիզմի երկրներին, պետք չէ աշխատավոր ժողովրդին, այն չի կարող ծառայել սոցիալիզմի հաղթանակի գործին, այլ ընդունակ է մարդկանց հասցնելու անթիվ տառապանքներ։ Հարկավոր է ուղղակի ասել, որ եթե համաշխարհային ջերմամիջուկային կոնֆլիկտ ծագեր, ապա դա մեծագույն ողբերգություն կլիներ մարդկության համար և, հասկանալի է, ծանր վնաս կհասցներ կոմունիզմի գործին։

Ոչ մի պարտիա, որի համար իսկապես թանկ են ժողովրդի շահերը, չի կարող չգիտակցել իր պատասխանատվությունը նոր համաշխարհային պատերազմի կանխման համար մղվող պայքարում։ «Դեմոկրատական և խաղաղասեր բոլոր ուժերի համար այժմ չկա ավելի կենսական խնդիր, քան մարդկության պաշտպանումը համաշխարհային ջերմամիջուկային աղետից...— ասված է 1960 թվականի հայտարարության մեջ։— Կոմունիստական պարտիաները պայքարը խաղաղության համար իրենց առաջնահերթ խնդիրն են համարում»։

Իսկ չինական ղեկավարները, որոնց ստորագրությունները դրված են այդ փաստաթղթի տակ, նույնիսկ պարծենում են նրանով, որ պատրաստ են «հանուն ռևոլյուցիայի» համաձայնել մարդկության կեսի ոչնչացմանը։ Նրանց ամենևին էլ չի հուզում այն բանը, որ ջերմամիջուկային պատերազմի բոցերում կկործանվեն ամբողջ երկրներ ու ժողովուրդներ։ «Բնաջնջիչ պատերազմի դեպքում սոցիալիստական լագերի մեջ մտնող փոքր երկրները ստիպված կլինեն իրենց շահերը ենթարկել ամբողջ լագերի շահերին»,— հայտարարել է, օրինակ, Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի անդամ Տաո Չժուն։ Տվյալ դեպքում «իրենց շահերը ենթարկել»՝ նշանակում է կործանվել, անհետանալ երկրի երեսից։ Գիտական սոցիալիզմի ոգու և էության ինչպիսի՜ հրեշավոր խեղաթյուրում։ Եթե «ռևոլյուցիայի չինական ստրատեգները» այդպես են պատկերացնում պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ապա հարկավոր է ուղղակի ասել. ոչ, դա ինտերնացիոնալիզմ չէ, դա մեծապետական շովինիզմ է՝



ավանտյուրիզմով և անպատասխանատվությամբ բազմապատկած։

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները հույս ունեն, թե պատերազմի և խաղաղության հարցերի նկատմամբ իրենց մոտեցմամբ, իմպերիալիզմի հասցեին արվող հայհոյանքներով և բարձրաձայն սենտենցիաներով, ինչպես, օրինակ՝ «թղթե վագր», կկարողանան շահել բարոյական կապիտալ և հեղինակություն ձեռք բերել «իմպերիալիզմի դեմ առավել համարձակ ու վճռականապես մարտնչողների» շրջանում։ Նրանք իրենց մասին այդպես էլ հայտարարում են, ընդսմին պնդելով, թե իբր ՍՄԿՊ-ն և եղբայրական մյուս պարտիաները, որոնք իրականացնում են սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության արտաքին քաղաքականություն, հույսները դնում են «իմպերիալիստների խաղաղասիրության» վրա և նրանցից խաղաղություն են «աղերսում»։

Սակայն այդպիսի կոպիտ կեղծիքներով և խեղաթյուրումներով ոչ ոքի չես խաբի։ Ինչ վերաբերում է ՍՄԿՊ-ին և մարքսիստական-լենինյան մյուս պարտիաներին պարզամիտների, իմպերիալիզմի իսկական բնույթի հարցում խարխափողների դերում ներկայացնելու՝ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության ձգտմանը, ապա դա սուտ է, այն էլ կանխամտածված, ուստի և ամենանողկալի սուտ։ Որտե՞ղ, ե՞րբ են կոմունիստները պնդել, թե իմպերիալիզմի բնույթը փոխվել է, թե նա կորցրել է իր ագրեսիվ էությունը։ 1957 թվականի Դեկլարացիայում շատ պարզ ասված է. քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, հող կմնա ագրեսիվ պատերազմների համար։ Բայց եթե իմպերիալիզմի բնույթը, նրա գիշատչական էությունը մնում է անփոփոխ, ապա համաշխարհային ասպարեզում փոխվել է ուժերի հարաբերակցությունը, փոխվել են իմպերիալիզմի տեղն ու դերը համաշխարհային էկոնոմիկայում և համաշխարհային քաղաքականության մեջ, նվազում է իրադարձությունների ընթացքի վրա նրա ներգործության հնարավորությունը։ Հենց այս ամենը իմպերիալիստներին ստիպում է դիմել խաղաղ գոյակցության։ Իմպերիալիստները գիտեն, որ Սովետական Միությունը, սոցիալիստական երկրներն ունեն հզոր զենք և ընդունակ են կործանիչ հակահարված տալու ամեն մի ագրեսորի։ Իմպերիալիստները չեն կարող հաշ-

վի չնստել կապիտալիստական երկրներում բանվորական ու դեմոկրատական հզոր շարժման, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հսկայական թափի հետ։ Մեր դասակարգային թշնամիների ոհմակում ավելի ու ավելի պարզ է դառնում այն ճշմարտությունը, որ եթե իմպերիալիստական խելահեղները համաշխարհային պատերազմ սանձազերծեն, ապա կապիտալիզմը աշխարհի երեսից կջնջվի և կթաղվի։

Որտե՞ղ, ե՞րբ են կոմունիստները մասսաներին կողմնորոշել իմպերիալիստներից խաղաղություն աղերսելու։ 1960 թվականի հայտարարության մեջ պարզ և աներկմտորեն ասված է. այսօր պայքարել խաղաղության համար՝ նշանակում է պահպանել մեծագույն զգոնություն, անդուլ կերպով մերկացնել իմպերիալիզմի քաղաքականությունը, բարձրացնել բոլոր խաղաղասեր ուժերի կազմակերպվածությունը, անընդհատ ուժեղացնել մասսաների ակտիվ գործողությունները խաղաղության պաշտպանման համար. կայուն խաղաղության պահպանման գործում կարևոր նշանակություն կունենա համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդումը. մինչև որ չիրականացվի զինաթափումը, սոցիալիստական երկրները պետք է իրենց պաշտպանական հզորությունը պահեն անհրաժեշտ մակարդակի վրա. խաղաղ գոյակցության գիծը մասսաների մոբիլիզացման, խաղաղության թշնամիների դեմ ակտիվ գործողությունների ծավալման գիծ է։

Իմպերիալիզմը, իհարկե, հայհոյանքի արժանի է, նրան հարկավոր է մերկացնել որպես աշխարհի ժողովուրդների համար մեծագույն չարիքի։ Բայց, ինչպես ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, միայն իմպերիալիզմին հայհոյելը, որքան էլ արդարացի լինի այդ հայհոյանքը, չի թուլացնի իմպերիալիզմի ուժերը։ Նույնիսկ նրանք, ովքեր իմպերիալիզմը անվանում են «թղթե վագր», գիտեն, որ այդ «թղթե վագրն» ունի ատոմային ատամներ։ Նա կարող է դրանք գործի դնել, և նրա նկատմամբ չի կարելի թեթևամիտ վերաբերվել։ Ուստի, խաղաղասեր ուժերից պահանջվում է մեծագույն եռանդ գործադրել խաղաղության համար մղվող պայքարում, մեծագույն զգոնություն ցուցաբերել խաղաղության թշնամիների ոտնձգությունների նկատմամբ։ Հենց այդպիսի քաղաքականություն են վարում Սովետական Միությունն ու մյուս սոցիալիստական երկրները, որոնք հաստատ



կանգնած են Դեկլարացիայի և Հայտարարության դիրքերում։

Սակայն հենց այդ միակ խոհեմ քաղաքականության դեմ են պայքարում չինական ղեկավարները։ Ելնելով իրենց հատուկ նպատակներից, նրանք փորձում են վարկաբեկել խաղաղ գոյակցության սկզբունքը, ժողովուրդներին հավատացնելով, թե զուր են խաղաղության պահպանման ուղղությամբ նրանց ջանքերը։

«Կեցցե՛ լենինիզմը» ժողովածուի մեջ ասված է. «Մինչև որ վերջ չտրվի իմպերիալիստական կարգին և շահագործական դասակարգերին, միշտ կարող են ծագել այս կամ այն բնույթի պատերազմներ»։ Եվ այնուհետև «Իհարկե, իմպերիալիստները վերջ ի վերջո պատերազմ կսանձազերծեն թե ոչ՝ դա մեզնից չի կախված, չէ՞ որ մենք իմպերիալիստների գլխավոր շտաբների պետերը չենք»։ Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի Պեկինի սեսիայում (1960 թվականի հունիս) Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի անդամ Լյու Նին-ին ասել է. «Այն պնդումները, թե խաղաղ գոյակցությունը հնարավոր է, սոսկ ուրախացնում են իմպերիալիստներին»։ Նույն Լյու Նին-ին Խաղաղության համաշխարհային խորհրդի Ստոկհոլմի սեսիայում, 1961 թվականի դեկտեմբերին, արտահայտվեց ավելի որոշակի. «Ովքեր կարծում են, թե իմպերիալիստների հետ կարելի է համաձայնության գալ և կարելի է ապահովել խաղաղ գոյակցություն, միայն թմրեցնում են իրենց»։ Դժվար չէ նկատել, որ բոլոր հայտարարությունների մեջ աչքի է ընկնում միևնույն սևեռուն ու տխուր կրկներգը՝ «պատերազմը կանխել հնարավոր չէ»։

Խաղաղ գոյակցության քաղաքականության դեմ չինական ղեկավարների ելույթների հետ սերտորեն կապված է զինաթափման հարցերում, արևմտյան տերությունների հետ սոցիալիստական երկրների միջազգային բանակցությունների հարցերում նրանց բռնած դիրքը։ Նրանք զինաթափումը դիտում են որպես «պատրանք, անիրագործելի լոզունգ», որն իբր կարող է միայն ճանապարհից շեղել ժողովուրդներին։ «Ոմանք գտնում են, — հայտարարել է օրինակ, Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի անդամ Լյու Չան-շենը արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի գլխավոր խորհրդի Պեկինի սեսիայում 1960 թվականին,— թե զինաթափման վերաբերյալ առաջարկությունները կարող են իրականացվել իմպերիալիզմի գոյության պայմաններում։ Դա

իրականությանը չհամապատասխանող պատրանք է... Աշխարհն առանց պատերազմների ու զենքի կարող է լինել միայն այն դարաշրջանում, երբ սոցիալիզմը հաղթանակի ամբողջ երկրագնդի վրա»։

Դժվար չէ այս հայտարարությունների ետևը տեսնել չինական ղեկավարների ձգտումը՝ աղավաղել ՍՄԿՊ-ի, մարքսիստական-լենինյան բոլոր պարտիաների պարզ դիրքը, և միաժամանակ վիժեցնել զինաթափման քաղաքականությունը, որը նոր համաշխարհային պատերազմի կանխման և միջազգային լարվածության թուլացման համար մղվող պայքարի կարևոր պայմանն է։

Անմտություն է պնդել, թե իբր մեր պարտիան ինչ որ պատրանքներ ունի իմպերիալիստական տերությունների ռազմական քաղաքականության նկատմամբ, այն բանի նկատմամբ, թե նրանք պատրաստ են դիմելու ընդհանուր և լրիվ զինաթափման։ Քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, ռեակցիոն ուժերը կկառչեն զենքից՝ որպես իրենց տիրապետության պահպանման վերջին միջոցից, և այն կօգտագործեն պատերազմներում, եթե իրենց հաջողվի դրանք սանձազերծել։ Այս ամենը միանգամայն ակներև է։

Բայց, արդյոք, դա նշանակո՞ւմ է, թե կոմունիստները պետք է հրաժարվեն զինաթափման համար պայքարելուց, ընդունեն սպառազինությունների մրցավազքի, նոր համաշխարհային պատերազմի անխուսափելիությունը։ Ոչ, այդպիսի պասսիվ դիրքը կհակասեր մեր ուսմունքի ամբողջ ռևոլյուցիոն ոգուն, ժողովուրդների արմատական շահերին։

Մենք համոզված ենք, որ աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը, ընդհանուր դեմոկրատական վերելքը, սոցիալիզմի աճող հզորությունը, բոլոր խաղաղասեր ուժերի վճռական գործողությունները կարող են և պետք է իմպերիալիստներին ստիպեն հակառակ իրենց ցանկությունների հաշվի նստել զինաթափման վերաբերյալ ժողովուրդների պահանջների հետ։ Մենք ֆատալիստներ չենք, մենք հավատում ենք ժողովրդական մասսաների հսկայական հնարավորություններին։ Պատահական չէ, որ դեռ յոթանասուն տարի առաջ Ֆրիդրիխ Էնգելսը կոմունիստներին կոչ է արել պայքարել զինաթափման համար, և դա այն ժամանակ, երբ աշխարհում անբաժանելիորեն իշխում էր կապիտալիզմը։

(Շարունակելի)

## ՋՐՈՒՅՑ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Յուրաքանչյուր ազնիվ մարդ հոգեկան բերկրանքի զգացում է ունենում, երբ կոլեկտիվը խրախուսում է նրա լավ աշխատանքը և հասարակական ճանաչման ներկայացնում նրան։ Կոմունիզմի կառուցման ընթացքում առաջ են քաշվում արտադրության առաջավորների նոր անուններ, որոնց աշխատանքը բարձր է գնահատվում հասարակության կողմից և նրանց աշխատանքային ծառայությունները համաժողովրդական ճանաչում են ստանում։ Սովետական ժողովրդի պատմությունն այժմ չի կարելի գրել առանց աշխատանքային բազմաթիվ առաջավորների ու հերոսների անունների, որոնք լայնորեն նշվում են կոմունիստական շինարարության ընթացքում և որոնցով պարծենում է ոչ միայն կոլեկտիվը, ուր նրանք աշխատում են, այլև ամբողջ երկիրը, ամբողջ ժողովուրդը։

Սովետական Միությունում յուրաքանչյուր քաղաքացի, որտեղ էլ որ աշխատելիս լինի նա, նրա լավ, թե վատ արարքները անպայմանորեն կնկատվեն կոլեկտիվի կողմից։ Մի քանի տասնամյակ առաջ մեր երկրում կոլեկտիվ աշխատանքը կատարվում էր միայն արդյունաբերական արտադրության մեջ։ Իսկ երբ երկրի մանր գյուղացիական տնտեսությունները միավորվեցին խոշոր կոլեկտիվ տնտեսությունների մեջ, ահա այդ ժամանակից էլ կոլեկտիվ աշխատանքն արմատավորվեց նաև գյուղատնտեսական արտադրության մեջ։

Եվ, ահա այսօր սոցիալիզմի հաղթանակած երկիրը, մարդկության նոր ու առաջադեմ ուժերի հասարակությունը, առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։ Սակայն սոցիալիստական կարգերի հաղթանակից հետո էլ որոշ մարդկանց գիտակցության մեջ, նրանց վարքագծում դեռ պահպանվում են կապիտալիզմի մնացուկները, որոնց դեմ պայքարը չի վրիպում կոմունիստական պարտիայի, մեր ժողովրդի ուշադրությունից։

Մեր օրերում կոմունիզմի գաղափարները դարձել են ոչ միայն նյութական կյանքը վերափոխող ուժ, այլև մարդկանց հոգեկան՝ աշխարհը հեղաշրջող գործոն։ Այդ գաղափարները մարդկանց դաստիարակում են բարձր մարդասիրական նորմաներով։ Կոմունիզմի գաղափար-

ները մարդկության ամենաազնիվ, ամենաառաջավոր սկզբունքներն են։ Մարդկանց մեջ լավագույն գծերի մշակումը, նրանց դաստիարակումը հերոսության, խիզախության օրինակներով, կյանքի բացասական, ստվերոտ կողմերի խիստ քննադատումը, երկերեսանիության, կեղծ բարեպաշտության, գռեհկության դատապարտումը բխում են կոմունիստական պարտիայի պահանջներից։

Կոմունիզմը կառուցվում է սովետական ամբողջ ժողովրդի ստեղծագործ աշխատանքով, հետևապես, նրա տեսադաշտից դուրս չպետք է մնան պետական ու աշխատանքային կարգապահության խախտողները, պորտաբույծները, անբաններն ու խուլիգանները։ Սովետական ժողովուրդը և հատկապես մեր ագիտատորները չեն կարող հանդուրժել, որ այդ տարրերը խանգարեն մեր երկրի առաջընթացը։ Գաղտնիք չէ, որ մեր օրերում դեռևս գոյություն ունեն առանձին մարդիկ, թեև դրանց թիվը շատ էլ չէ, որոնք խանգարում են մի ամբողջ կոլեկտիվի հայրենանվեր աշխատանքը։ Նրանք օգտագործում են ամեն մի փոքր հնարավորություն, որպեսզի ձրի ապրեն հասարակության հաշվին, խախտեն կարգ ու կանոնը, անտեղի վիրավորանք ու անհանգստություն պատճառեն ազնիվ մարդկանց։ Դրանք, այդ անհատները, գաղափարազուրկ, նեղ էգոիզմով հիվանդ, դատարկապորտ, հասարակական շահը ոտնահարող անձնավորություններ են։

Ահա թե ինչու մեր հասարակությունը մտահոգված է անհատի դաստիարակությամբ, իսկ անհատը՝ հասարակության բարօրությամբ։ Մեր երկրում անձնականը և հասարակականը մի ամբողջություն են կազմում։ Կոլեկտիվը շեղված անհատին օգնում է գիտակցելու իր արարքների վնասաբերությունը և ծուռ ու մուռ արահետներից դուրս գալու կյանքի ճիշտ ու լայն ճանապարհը։ Այո, միայն կոլեկտիվում է մարդ զգում իր վիթխարի հոգեկան ուժը։

Իրականություն է, որ մեր միջավայրում դեռ կան որոշ մարդիկ, որոնք չեն պահպանում սոցիալիստական համակեցության կանոնները, հասարակական վայրերում երևում են հարբած վիճակում և ընդհանրապես իրենց վարքագծով խանգարում են սովետական մարդկանց հանգիստ աշխատանքը։ Ահա հենց այստեղ իր ծանրակշիռ խոսքը պետք է ասի կոլեկտիվը, որը մեծ ուժ է, եթե նա իրոք գործում է։



Սոցիալիզմին խորթ է մերկ բռունցքի ֆունկցիայի օգտագործումը հասարակության համակեցության նորմաները խախտողների նկատմամբ։ Մարդու դաստիարակությունը պրոֆիլակտիկ միջոցառումների կոմպլեքս է, որի մեջ իր որոշակի դերն է խաղում համոզման մեթոդը, որը գործուն միջոց է և տալիս է լավ արդյունքներ։

Անձնական հարաբերություններում պահպանվող վատ բարքերն ու սովորությունները հաղթահարվում են ամենից առաջ հասարակական կարծիքի, կոլեկտիվ ներգործության շնորհիվ։ Հարգանքը ազնիվ աշխատողի նկատմամբ պահանջում է խարազանել ծույլին, պորտաբույծին, էգոիստին ու եսամոլին։ Մեկի կամայականությունը ոտնահարում է մյուսի պատիվն ու իրավունքները։ Մինչդեռ այդպիսի կամայականությունը խեղդվում է կոլեկտիվում։

Մեր երկրում դեպի հասարակությունը, դեպի մարդը ունեցած վերաբերմունքի հիմքում ընկած է աշխատանքի նկատմամբ եղած կոմունիստական վերաբերմունքը, որը դարձել է մարդու պատվի ու նրա հանդեպ եղած հարգանքի չափանիշ։ Դա կոմունիզմ կառուցող մարդու սրբազան պարտականությունն է։ Մեր երկրում ամեն մի հանրօգուտ աշխատանք պատվավոր է։ Այն բանի խոր գիտակցումը, որ կոմունիստական աշխատանքով են ստեղծվում նյութական առատ բարիքները, նորանոր սխրանքների է կոչում մեր հասարակության անդամներին։ Ով հասարակությունից զանազան ճանապարհներով որևէ բարիք ստանալով խուսափում է հանրօգուտ աշխատանքից, չի մասնակցում այդ բարիքների ստեղծմանը, նա ձրիակեր է ու պորտաբույծ։

Կոմունիստական հասարակարգում մարդը չի կարող չաշխատել։ Այդ թույլ չեն տա ոչ նրա դաստիարակությունն ու գիտակցությունը, ոչ էլ հասարակական կարծիքը։ Եվ իրոք, մեր երկրում յուրաքանչյուր քաղաքացու համար ըստ ընդունակությունների աշխատելը դարձել է սովորություն, առաջին կենսական պահանջ։

Պարտիան հռչակում է, որ սովետական մարդկանց ներկա սերունդը կապրի կոմունիզմի ժամանակ։ Այդ նշանակում է, որ հենց այդ սերունդն իր պրակտիկ, անխոնջ ու ազնիվ աշխատանքով պետք է կառուցի կոմունիզմի շենքը։ Սակայն դրա համար բավական չէ, որ միայն ստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Անհրաժեշտ է նաև, որպեսզի մարդկանց գի-

տակցությունը, նրանց հոգեբանությունը լիովին համապատասխանի հասարակության զարգացման առաջընթաց շարժմանը։ Կոմունիստական հասարակության նոր քաղաքացին պետք է զերծ լինի հնի փոշուց ու կեղտից և իր մեջ ամրացնի բարոյական նոր գծեր։ Իսկ բարոյական նոր կերտվածք մարդիկ կարող են ստանալ առաջին հերթին կոլեկտիվ աշխատանքի բովում, կոմունիզմ կառուցողների ընտանիքում։

Կոլեկտիվի մեջ է ամրապնդվում միմյանց նկատմամբ մարդկանց վստահությունը, ապահովվում է անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումը։ Կոլեկտիվում է աճում պատասխանատվության, իր բոլոր գործողությունների համար հաշվետու լինելու զգացումը։ Ահա թե այդ կապակցությամբ ինչ է ասում Մոսկվայի էլեկտրամեքենաշինական «Դինամո» գործարանի ինժեներ Մ. Վ. Սինայսկին. «Առաջ, երբ մեր ամեն մի բանվոր պետք է նշեր իր աշխատանքի գալը, հաճախ այսպես էր լինում. մարդը ժամանակին ներկայանում է, նշում, և ձևականությունն ապահովված է։ Եվ հետո 15 րոպե անգործ կանգնում է։ Այժմ այլ կերպ է. չնայած որ չի նշվում գալը, բայց բոլորը ժամանակին են գալիս և իսկույն կանգնում հաստոցի մոտ։ Իսկ եթե ուշացող է գտնվում, ապա բրիգադում այնպես են մշակում, որ ուրիշ անգամ անսովոր է դառնում ուշանալը»։

Կոմունիստական պարտիայի պահանջով մեր երկրի յուրաքանչյուր հիմնարկություն, ձեռնարկություն, կոլտնտեսություն, դպրոցական ու բուհական հաստատություն մեծ աշխատանք են կատարում նոր մարդու բարոյական կերպարի ձևավորման ուղղությամբ։ Եթե կոլեկտիվի այս կամ այն անդամը շեղվում է ճանապարհից և կանգնում կոմունիստական բարոյականության նորմաներին հակասող ուղու վրա, ապա այդ անձնավորության սխալ արարքներն առաջին հերթին անպայման քննարկման առարկա են դառնում ագիտացիոն ժամերին, պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններում և կոլեկտիվի հզոր ուժի միջոցով, հասարակական կարծիք ստեղծելով, ձգտում են ուղղել նրան։

Մեր երկրում մարդը հասարակության հանդեպ բարոյական պատասխանատվություն է կրում իր գործերի համար։ Սոցիալիստական հասարակությունը գնահատական է տալիս մարդկանց գործերին կոմունիզմի կառուցմանը նրա մասնակցության տեսանկյունից։ Եթե



անձնական շահը հակասում է հասարակականին, այն դատապարտվում է։ Մարդը պետք է կարողանա հսկել իրեն, հաշվի առնելով հասարակական կարծիքը։ Ազնվությունն ու ճշմարտությունը, պարզությունն ու համեստությունը, բարոյական մաքրությունը կոմունիզմ կառուցող յուրաքանչյուր մարդու համար պետք է դառնան կենսական պահանջմունք։

Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի մեխանիկական ցեխի զոդող բանվոր Վ. Առաքելյանը հերթափոխությունն ավարտելուց հետո արդեն պատրաստվում էր տուն գնալ, երբ տագնապալի լուր ստացվեց. № 1 ցեխում պայթել են սառցարանի խողովակները։ Բանվորը, որը կոմունիստաբար աշխատող կոլեկտիվի անդամ է և ապրում է իր գործարանային կոլեկտիվի կյանքով, մի պահ զգաց վթարի հետևանքները, հասկացավ, որ գործարանի կենտրոնական զարկերակը հանդիսացող ցեխում տեղի ունեցած վթարը երկար պարապուրդների պատճառ կդառնա, որից կտուժեն և գործարանը, և աշխատանքային ընկերները։ Առանց լրացուցիչ վարձատրության, Առաքելյանը աշխատեց ամբողջ գիշեր, մոնտաժեց խողովակները և առավոտյան տուն գնաց, երբ ամեն ինչ կարգին էր։ Բանվորական օրը գործարանում սկսվեց սովորականի պես։

Իսկ որքա՞ն նման օրինակներ կան ռեսպուբլիկայի և երկրի ամեն մի ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, հիմնարկությունում։ Այդ օրինակներն ու փաստերը հաստատում են այն միտքը, որ մեր ժողովուրդը օժտված է առաքինություններով, որ նա ազնիվ է, պարզ ու համեստ։ Դա միևնույն ժամանակ հաստատում է, որ կոմունիստականը ամուր մտնում է մեր կյանքի մեջ, դառնում սովորական, ամենօրյա, որ կոմունիզմ կառուցող միլիոնավոր մարդիկ ղեկավարվում են «Բոլորը մեկի, մեկը՝ բոլորի համար», «Մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր» կոլեկտիվիզմի ու հումանիզմի բարոյական բարձր սկզբունքներով։

ԱՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԵԾ ՔԻՄԻԱՆ

Ի՞նչ է նշանակում մեծ քիմիա։ Մեծ քիմիան անմիջապես խարսխվում է քիմիական արդյունաբերության հեռանկարային և միևնույն ժամանակ բազմատոննաժ արտադրանքի արտադրության վրա։ Պարզ է, ժամանակակից պայմաններում, երբ տեղի է ունենում արտադրողական ուժերի հուժկու վերելք և ժողովրդական տնտեսությունն օրեցօր ավելացնում է հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի պահանջները, ապա մեծածավալ արտադրական օբյեկտների ստեղծումը և զարգացումը դառնում է օրվա հրամայական խնդիր։ Այդ իսկ պատճառով Սովետական Միության կոմունիստական պարտիան իր վերջին տարիների համագումարներում և պլենումներում ամենալուրջ ուշադրությունը դարձնում է հասարակական արտադրության այնպիսի ճյուղերի զարգացմանը, որոնք կարող են ամենայն արդյունավետությամբ լուծել կոմունիստական վիթխարի շինարարության խնդիրները։

Արտադրության այդպիսի առաջնակարգ ճյուղ է հանդիսանում քիմիական արդյունաբերությունը իր արագ զարգացող հզոր, բազմատոննաժ արտադրանքի օբյեկտներով։

Քիմիական արդյունաբերության առավել աճը մեր երկրում բացատրվում է նրանով, որ վերջին տարիներին քիմիական գիտության և տեխնոլոգիայի կողմից ձեռք բերված նշանավոր հաջողությունները հնարավորություն են տալիս մեծ քանակությամբ արտադրել և օգտագործել ժողովրդական տնտեսության մեջ այնպիսի նյութեր, որոնք լայն հեռանկարներ են բացում բնական ռեսուրսների հետագա ռացիոնալ օգտագործման, արդյունաբերության հումքի բազայի ընդլայնման, գյուղատնտեսության մթերատվության անընդհատ բարձրացման համար։

Մեր ռեսպուբլիկան ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության զարգացման մեջ գրավում է պատվավոր տեղ, քանի որ Հայաստանը հաշվվում է որպես զարգացած քիմիական արդյունաբերության հիմնական տնտեսական շրջաններից մեկը։ Հայաստանի մեծ քիմիան և ընդհանրապես քիմիական արդյունաբերության պատ-



մությունը ամենաերիտասարդներից է։ Հայաստանի մեծ քիմիայի առաջին օբյեկտը՝ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանը, շարք է մտել ավելի քան երկուս ու կես տասնամյակ առաջ։ Այդ ժամանակվանից սկսած՝ արագ կերպով ստեղծվում և ընդլայնվում են Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, Երևանի ավտոդողերի, «Պոլիվինիլացետատ» և այլ խոշոր քիմիական արտադրությունները։ Ներկայումս Հայաստանի քիմիական արդյունաբերությունն արտադրում է ժողովրդական տնտեսության համար կարևոր այնպիսի նյութեր, ինչպես սինթետիկ կաուչուկը, ամոնիակը, կաուստիկ սոդան, կալցիումի ցիանամիդը, քացախաթթուն, վինիլացետատը և նրա ածանցյալները, ծծմբաթթուն, պղնձարջասպը, ազոտային և ֆոսֆորային պարարտանյութերը և այլն։

Մինչև վերջին տարիները Հայաստանում ստեղծված քիմիական արդյունաբերությունը զարգացել է մեր ռեսպուբլիկայի հումքային բազայի վրա, որն ամբողջովին անօրգանական հիմք է ունեցել։ Այժմ զգալիորեն փոխվում է քիմիական արդյունաբերության հումքային բազան։ Քիմիական արդյունաբերությունն իր հետագա զարգացումը գտնում է օրգանական հումքի լայն օգտագործման մեջ։ Բնական գազի, գազային բենզինի վերամշակման հիման վրա սինթետիկ ձյութերի, պլաստմասսաների, քիմիական թելի և սինթետիկ նյութերի արտադրությունը զգալիորեն մեծ տեղ կգրավի ռեսպուբլիկայի քիմիայի մեջ։ Բնական գազի օգտագործմամբ շեշտակիորեն կաճի հանքային պարարտանյութերի արտադրությունը։

Սինթետիկ նյութերի արտադրության մեջ բնական գազի օգտագործման հետ մեկտեղ կզարգանան քիմիական արդյունաբերության՝ տեղական հումքի բազայի վրա հիմնված ճյուղերը։ Այս տեսակետից նշանակալից է նեֆելինային սիենիտների օգտագործումը և դրանց բազայի վրա Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի ստեղծումը։ Դա առաջին հերթին հնարավորություն կտա ռեսպուբլիկայում ունենալու քիմիական արդյունաբերության նոր կենտրոն, երկրորդ՝ անհրաժեշտ տեղական հումքով կապահովի ալյումինի արդյունաբերությունը և հումքի կոմպլեքսային օգտագործման միջոցով կկազմակերպվեն արտադրության բոլորովին նոր ճյուղեր։

Չնայած այն բանին, որ մեր ռեսպուբլիկան հարուստ է անօրգանական հումքով, օրգանական հումքի օգտագործումը մնում է հեռանկարային, որը մեծ փոփոխություններ է մտցնում քիմիական արդյունաբերության և արտադրության տեխնոլոգիայի մեջ։

Օրգանական հումքի օգտագործման բազայի վրա Հայաստանում ստացվում է և կստացվի պոլիքլորվինիլային խեժեր, վինիֆլեքս, սինթետիկ մանրաթելի նոր տեսակը, մելամինը և այլն։

1964—1970 թվականներին 4 անգամ կաճի քիմիական արդյունաբերության արտադրանքը (ՍՍՌՄ մասշտաբով այն կկազմի 3,3 անգամ)։ Այս ժամանակամիջոցում սինթետիկ կաուչուկի արտադրությունը կավելանա 2 անգամ, ամոնիակինը՝ հինգ անգամ, ծծմբաթթվինը՝ 8 անգամ, քացախաթթվինը՝ 5 անգամ, հերբիցիդներինը՝ 5 անգամ, սինթետիկ և արհեստական մանրաթելինը՝ 3,8 անգամ և այլն։ Այդ տարիներին կստեղծվեն և կընդլայնվեն մի շարք քիմիական հսկա արտադրություններ։ Կգործարկվեն քիմիայի հսկաներ՝ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, Մասիսի քիմիական գործարանը և մի շարք այլ օբյեկտներ։

Քիմիական արդյունաբերության աճման տեմպերը այդ տարիներին մեծ չափով առաջ կանցնեն ռեսպուբլիկայի արդյունաբերության մյուս ճյուղերի զարգացման տեմպերից։ Այսպես, եթե 1964—1965 թվականներին արտադրության ընդհանուր ծավալը պետք է ավելանա 26 տոկոսով, ապա այդ տարիների ընթացքում քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1963 թվականի հետ համեմատած, կաճի 54 տոկոսով։

1964—1970 թվականներին արագորեն կաճի քիմիական պարարտանյութերի արտադրությունը, որը 1963 թվականի համեմատությամբ կավելանա 4,5 անգամ։ 1970 թվականին մեր ռեսպուբլիկան կտա ժողովրդական տնտեսությանը 1 միլիոն տոննա պարարտանյութ։ Այդ բանին հասնելու համար արդեն իսկ հիմա մեծ չափով ավելացվում են Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի և Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի արտադրական հզորությունները։

Ռ. ՇԱԽԿԱԼՅԱՆ



# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## (Ծննդյան 100-ամյակի առթիվ)



Հայ ժողովուրդը նշում է իր սիրելի բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանի ծննդյան 100-ամյակը։ Նրա ստեղծագործությունները մի փառավոր էջ են կազմում հայ մշակույթի պատմության մեջ։

Հ. Հովհաննիսյանը ծնվել է Էջմիածնում 1864 թվականի մայիսի 8-ին, գյուղացու ընտանիքում։ Սկզբնական կրթությունը ստացել է Էջմիածնի ծխական դպրոցում, իսկ այնուհետև ավարտելով Երևանի պրոգիմնազիան, 1877 թվականին մեկնել է Մոսկվա և ընդունվել Լազարյան ճեմարանը։ 1883 թվականին Հովհաննիսյանն ավարտում է Լազարյան ճեմարանը և հաջորդ տարին ընդունվում Մոսկվայի համալսարանի պատմալեզվագրական ֆակուլտետը։ 1888 թվականին Հովհաննիսյանը ավարտելով Մոսկվայի համալսարանը՝ վերադառնում է Էջմիածին և ուսուցչի պաշտոն ստանձնում Գևորգյան ճեմարանում։

1912 թվականին Հովհաննիսյանը տեղափոխվում է Բաքու և ընտրվում Բաքվի քաղաքային ուսումնական հանձնաժողովի նախագահ։

Ստեփան Շահումյանը և Ալյոշա Ջափարիձեն, բարձր գնահատելով Հովհաննիսյանի ծառայությունները, նրան 1918 թվականին նշանակում են Բաքվի կոմունայի լուսբաժնի վարիչ։ 1919 թվականին նա վերադառնում է Էջմիածին, իսկ 1922 թվականին տեղափոխվում է Երևան և ամբողջովին նվիրվում Սովետական Հայաստանի նոր կուլտուրայի շինարարությանը։ 1929 թվակա-





նի սեպտեմբերի 29-ին դադարեց բաբախել պոետի սիրտը:

Հովհաննես Հովհաննիսյանի քնարերգությունը լինելով իր ժամանակի հասարակական-քաղաքական կյանքի լիարժեք արտահայտությունը, իրենով նշանավորեց մի նոր էտապ ռեալիստական պոեզիայի զարգացման ճանապարհին: Նա խորապես գիտակցելով բանաստեղծի պատմական կոչումը, իրավացիորեն ընտրել է պոեզիան է՛լ ավելի ժողովրդական դարձնելու միակ ճշմարիտ ուղին: Առաջնորդվելով բովանդակության և ձևի ներդաշնակության սկզբունքով, նա հրաժարվեց անարվեստ, դեկլարատիվ գաղափարայնությունից, համոզված լինելով, որ աշխատավոր մարդու հուզաշխարհը թափանցել կարող է բանաստեղծական այն խոսքը, ուր առաջավոր գաղափարը տրված է պոետական բարձր արվեստով: Կանգնելով ստեղծագործական ճիշտ ուղու վրա, Հովհաննիսյանը իր տաղանդին հատուկ ուժով պատկերեց աշխատավոր մարդու և հասարակական հարաբերությունների միջև գոյություն ունեցող և օրըստօրե խորացող կոնֆլիկտը:

Սակայն ժողովրդի հույզերի երգիչ-բանաստեղծը չի սահմանափակվել միայն ռեալ իրականության գեղարվեստական պատկերմամբ: Նա կանխատեսելով իր հայրենիքի այգաբացը՝ ակտիվ պայքարի կոչ է արել:

Հովհաննիսյանի պոեզիայի ամենագողտրիկ էջերից են սիրո և բնության երգերը՝ ժողովրդի սրտի ցավով տոգորված, ազնիվ ու խորունկ: Նա մի առանձին գրավչությամբ է պատկերել նաև հայ գյուղի և գյուղացու լիրիկական կերպարը:

Մեծ է Հովհաննիսյանի վաստակը հայ գրականության մեջ նաև որպես թարգմանիչ: Տիրապետելով մի քանի լեզուների՝ նա բազմաթիվ թարգմանություններ է կատարել համաշխարհային դասական գրողներից:

Հովհաննիսյանը սրբորեն պահպանելով գրականության ժողովրդայնության սկզբունքները, ուղի հարթեց դեպի ռեալիստական քնարերգության այն դպրոցը, որը կատարելության հասավ Թումանյանի և Իսահակյանի առաջնակարգ պոեզիայում:

Այսօր էլ Հովհաննես Հովհաննիսյանի անունը թանկ ու հարազատ է հայ ընթերցողին: Նա իր ժողովրդական վառ պոեզիայով հավերժ կապրի ժողովրդի սրտում:

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ



# ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## (Թվեր և փաստեր)

Աշխատանքային նոր հաջողություններով նշանավորվեց յոթնամյակի վեցերորդ տարվա առաջին եռամսյակը: Անցած երեք ամսում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերվեցին նոր և փայլուն հաջողություններ: Ահա տեղեկություններ այդ մասին:

✪ Այս տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքը աճել է մոտ 8 տոկոսով:

✪ Նույն ժամանակամիջոցում քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացել է 15, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 12, մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքը՝ 11 տոկոսով:

✪ Առաջին եռամսյակում արտադրվել են 5 միլիոն 482 հազար տոննա հանքային պարարտանյութ, 18,8 հազար տոննա բույսերի պաշտպանության և վնասատուների դեմ պայքարի քիմիական միջոցներ, 171 հազար տոննա սինթետիկ նյութ և պլաստմասսա, 86,3 հազար տոննա արհեստական և սինթետիկ թել, 227 հազար տոննա կաուստիկ սոդա, 678 հազար տոննա կալցինացած սոդա, մեկ միլիոն 891 հազար տոննա ծծմբաթթու:

✪ Անցած երեք ամսում երկրում արտադրվել են 15 միլիոն 300 հազար տոննա թուջ, 20,9 միլիոն տոննա՝ պողպատ, 16,6 միլիոն տոննա՝ գլանվածք, 326 միլիոն մետր՝ պողպատե խողովակ:

✪ Նշանակալից են հաջողությունները երկրի ընդերքը արդյունավետ շահագործելու բնագավառում: Անցած երեք ամսում արդյունահանվել է 35,1 միլիոն տոննա երկաթաքար, 53,8 միլիոն տոննա նավթ, 27,9 միլիարդ խորանարդ մետր գազ, 138 միլիոն տոննա ածուխ:

✪ Երեք ամսում արտադրվել է 108 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որն անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմում է 112 տոկոս:

✪ Խոշոր հաջողություններ են ձեռք բերված մեքենաշինության բնագավառում: Այս տարվա առաջին եռամսյակում արտադրվել են 2,7 միլիոն կիլովատ տուրբին, 7,2 միլիոն կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչ, 44,7 հազար հատ մետաղահատ հաստոց, 75 միլիոն ռուբլու քիմիական սարքավորում, 451 միլիոն ռուբլու սարք և այլն:

✪ Զգալի թվով ավելացել են տրանսպորտային միջոցները։ Առաջին եռամսյակում արտադրվել և շահագործման են հանձնվել 383 սեկցիա մագիստրալային ջերմաքարշ, 166 հատ մագիստրալային էլեկտրաքարշ, 151 հազար հատ ավտոմոբիլ, 6 միլիոն հատ ավտոդող և տրանսպորտային շատ ուրիշ միջոցներ։

✪ Սոցիալիստական արդյունաբերության աշխատողները երկրին տվել են հիանալի գյուղատնտեսական մեքենաներ։ Երեք ամսում արտադրվել են 332 միլիոն ռուբլու գյուղատնտեսական մեքենա, 76,5 հազար հատ տրակտոր, 21,1 հազար հատ զանազան կոմբայն, 54,2 հազար հատ տրակտորային գութան, 47,8 հազար հատ տրակտորային շարքացան, 27,9 հազար հատ տրակտորային հնձիչ։

✪ Երեք ամսում արտադրվել են 15,1 միլիոն տոննա ցեմենտ, 11 միլիոն խորանարդ մետր հավաքովի երկաթբետոն, 1.001 միլիոն պայմանական սալ շիֆեր, 49 միլիոն քառակուսի մետր պատուհանի ապակի։

✪ Մեծ չափերով ավելացել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Միայն 3 ամսում արտադրվել է մեկ միլիարդ 329 միլիոն քառակուսի մետր գործվածքեղեն, որը 84 միլիոն քառակուսի մետրով ավելի է նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ։

✪ Նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ կաշվե կոշիկի արտադրությունն ավելցել է 4 միլիոն զույգով, հեռուստացույցներինը՝ 121 հազարով, լվացքի մեքենաներինը՝ 149 հազարով, սառնարաններինը՝ 40 հազարով, կահույքինը՝ 39 միլիոն ռուբլով և այլն։

✪ Աճել է սննդամթերքների արտադրությունը։ Անցած երեք ամսում արտադրվել է 370 հազար տոննա երշիկեղեն, որն անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ կազմում է 106 տոկոս, ձկան որսը հասնում է 1,3 միլիոն տոննայի, որը 162 հազար տոննայով ավելի է 1964 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ։

✪ Այս տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, հրուշակեղենի արտադրությունն ավելացել է 50 հազար տոննայով, պահածոյինը՝ 115 միլիոն տուփով։ Առաջին եռամսյակում արտադրվել են 610 հազար տոննա հրուշակեղեն, 1,2 միլիարդ տուփ պահածո։

✪ Արդյունաբերության 1964 թվականի առաջին եռամսյակի պլանները լավագույն ցուցանիշներով են կատարվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Քիմիական արդյունաբերական արտադրանքն այս տարվա առաջին եռամսյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 40, մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքը՝ 12 տոկոսով։

✪ Անցած երեք ամսում մեր ռեսպուբլիկայում արտադրվել է



1.681 տոննա արհեստական և սինթետիկ թել, որը նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմում է 236 տոկոս։

✪ Այս տարվա առաջին եռամսյակում մեր ռեսպուբլիկան երկրին տվել է 291 հազար հատ ավտոդող, 8,9 հազար տոննա կաուստիկ սոդա (92 տոկոսանոց), 174,6 հազար կիլովատ շարժական էլեկտրակայան, 2.017 հատ մետաղահատ հաստոց, 255 հատ ղարբնամամլիչ մեքենա, 7,3 միլիոն ռուբլու ավտոմատացման սարքեր և այլն։

✪ Անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ ավելի են արտադրվել. էլեկտրաչափման սարքեր՝ 354 հատ, կենտրոնախույս պոմպ՝ 1.885 հատ, ժամացույց՝ 93 հազար հատ, բամբակե և մետաքսե գործվածք՝ 1 միլիոն 915 հազար քառակուսի մետր և այլն։

Մեր մեծ երկրում միլիոնավոր մարդկանց մրցությունը շարունակվում է: Նրանք ձգտում են երկրին տալ ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք: Այդ մրցության մեջ իրենց պատվավոր տեղն են գրավում նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները:

---

## ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

---

### Աղքատություն

ԱՄՆ-ի պրեզիդենտ Լ. Ջոնսոնի հայտարարությամբ, որը կատարվեց օրերս Սպիտակ տանը լրագրային խմբագիրների ամերիկյան ընկերության կոնֆերանսի մասնակիցների պատվին կազմակերպված ընդունելության ժամանակ, ավելի քան ինը միլիոն ամերիկյան ընտանիքներ ծանր աղքատության մեջ են։ Նրա տեղեկություններով զինակոչիկների 49 տոկոսը կամ յուրաքանչյուր երկրորդ երիտասարդ ամերիկացին անպետք է բանակի համար։

### Ավտովթարներ

Ավտովթարների պատճառով 1963 թվականի 11 ամիսների ընթացքում Անգլիայում մահացել են 6.156 մարդ։

### Նարկոտիկները ԱՄՆ-ում

Հատուկ կոնսուլտատիվ հանձնաժողովի կողմից ԱՄՆ-ի պրեզիդենտին ներկայացրած հաշվետվության տվյալներով այժմ ԱՄՆ-ում կան 100 հազար նարկոտիկներ, որոնց պատճառով երկրում հանցագործությունները աճում են։ Նարկոտիզմը շատ է տարածված հատկապես երիտասարդության մեջ։

## Անում են հանցագործությունները

*ԱՄՆ-ի հետաքննության ֆեդերալ բյուրոյի դիրեկտոր է. Հուվերի կազմած տվյալներով 1963 թվականի 10 ամիսների ընթացքում, 1962 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ հանցագործությունները աճել են 10 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում Նյու-Յորքում սպանվել է 410 մարդ, Չիկագոյում՝ 267, Լոս-Անջելոսում՝ 155, Դալասում՝ 90 և Վաշինգտոնում՝ 73 մարդ։*

## Հնդիկ բնիկների ծանր վիճակը ԱՄՆ-ում

*ԱՄՆ-ի պրեզիդենտ Լինդոն Ջոնսոնը, Սպիտակ տանը ընդունելով Ամերիկայում ապրող հնդիկների ազգային կոնգրեսի գործադիր կոմիտեի անդամներին, խոստովանել է, որ Ամերիկայի հիմնական բնիկները՝ հնդիկները, տառապում են աղքատությունից ավելի շատ, քան երկրում ապրող մի որևէ այլ ազգային խումբ։ «Դա խայտառակ փաստ է,— ասաց պրեզիդենտը,— 400 հազար հնդիկ ընտանիքների միջին եկամուտը, որոնք ապրում են արգելանոցներում (ռեզերվացիաներում), քիչ է ամբողջ երկրում եղած միջին եկամտի մեկ երրորդից»։*

*Պրեզիդենտի խոստովանությամբ գործազրկությունը հնդիկների մեջ կազմում է 50 տոկոս, իսկ առանձին դեպքերում՝ 85 տոկոս։ Կյանքի միջին տևողությունը 20 տարով պակաս է, ամբողջ երկրում եղած կյանքի միջին տևողությունից։ Հնդիկների երեխաների 60 տոկոսը դպրոցը թողնում է առանց այն ավարտելու։*

## Նյու-Յորքի իսկական պատկերը

*Նյու-Յորքի քաղաքագլուխ Ռոբերտ Վագների կազմած հաշվետվությամբ, որը նա ներկայացրել է քաղաքային վարչությանը, այժմ գլխավոր պրոբլեմը, որ կանգնած է Նյու-Յորքի առաջ՝ դա աղքատությունն ու գործազրկությունն է։ Նյու-Յորքի ավելի քան 300 հազար բնակիչ տառապում են գործազրկությունից, 77 հազար երիտասարդ նյույորքցիներ անգրագետ են և չունեն մասնագիտություն։ 1963 թվականին Նյու-Յորքի ֆաբրիկաներում ու գործարաններում բանվորական տեղերը կրճատվեցին 15 հազարով։ Մեկ միլիոն նյույորքցիներ ապրում են այնպիսի տներում, որոնք կառուցվել են 50—100 տարի առաջ և որոնցից մեծ մասը հետնախորշեր են։*



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### 1. Չինական ղեկավարների պառակտիչ գործունեությունը համաշխարհային կոմունիստական շարժման մեջ:

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հաշվետվություն ՌԿ(բ)Պ Կենտկոմի քաղաքական գործունեության մասին. *Երկեր, հատոր 32, էջ 201—231, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Եղբայրություն, միասնություն, հավատարմություն մարքսիզմ-լենինիզմին. *Ճառ, սովետա-լեհական բարեկամության միտինգում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 16-ի համարում։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ — Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ պայքարի մասին. *զեկուցում տրված ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի ապրիլի 4-ի համարում։*

Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի պլենումի 1964 թվականի մարտի 24-ի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի ապրիլի 8-ի համարում։*

### 2. Պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Պատասխան ամերիկյան թերթի թղթակցի հարցերին, *Երկեր, հատոր 30, էջ 464—467, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի *XX համագումարին, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1956։*

Հավատարմություն մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, *«Պրավդա»-ի 1964 թվականի ապրիլի 3-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի ապրիլի 4-ի համարում։*

## 3. ՍՍՌՄ արդյունաբերության նոր հաջողությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը. *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 23-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը. *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 24-ի համարում։*

Միլիոնների մրցությունը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 29-ի առաջնորդողը։*

## 4. Անքերի կատարենք գարնան գյուղատնտեսական աշխատանքները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Գյուղատնտեսության ինտենսիվացման պարտիայի կուրսի իրականացման հետ կապված մի քանի հարցերի մասին, *նամակ ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությանը. տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 25-ի և 26-ի համարներում։*

Ինտենսիվացումը գլխավոր ուղղությունն է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 26-ի համարում։*

Գարնանացանը հարվածային ճակատ է. *«Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 24-ի առաջնորդողը։*

## 5. Երկրին տանք ավելի շատ և ավելի բարձրորակ քիմիական արդյունաբերության արտադրանք

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Քիմիական արդյունաբերության զարգացման հիմնական խնդիրները առաջիկա յոթ տարում. *ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում (1963 թ.) տված զեկուցումից, առանձին բրոշյուր, էջ 15—21, Հայպետհրատ, 1964։*

Քիմիական արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր աղբյուրները, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 27-ի համարում։*

Լայն ճանապարհ մեծ քիմիային, *«Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թվականի առաջին համարի առաջնորդողը։*






## Նոր գրքեր

Պ. Տ. ԱՍՏԱՇԵՆԿՈՎ, Ատոմային արդյունաբերություն, *268 էջ, տպաքանակ 2000, գինը 51 կոպ.։*

*Այս գրքում, որ նախատեսված է ընթերցողների լայն շրջանների համար, մանրամասնորեն ցույց է տրված ուրանի հանքավայրից մինչև ռեակտորն ընկած ուղին, որտեղ ծնվում է նոր վառելիքը՝ պլուտոնիումը։ Ընթերցողը կիմանա, թե ինչպես են արտադրվում ուրանի 233 և 235 ատոմային կշիռ ունեցող իզոտոպները, ինչպես է կառուցված հեքիաթային վառարանը, որտեղից մոխրի փոխարեն «հանում են» ավելի շատ վառելիք, քան այնտեղ դրվել էր։*

*Գրքում մեծ տեղ է տրվում ջերմամիջուկային վառելիքի արտադրությանը, մարդու կողմից ռեակցիաների «ընտելացմանը», որոնք դեռևս իրականացվում են միայն ջրածնային ռումբերի պայթյունի ձևով։ Կոնկրետ թվերով ցույց է տրված, թե էներգիայի զարգացման գործում ինչպիսի վիթխարի թռիչք կլինի ջերմամիջուկային ռեակտորի ստեղծումը, որի համար վառելիք կարելի է գտնել երկրագնդի ցանկացած ջրավազանում։*

Վ. Մ. ԱՂՈՒԶՈՒՄՑՅԱՆ, Կոմունիզմը և աշխատանքը, *98 էջ, տպաքանակ 2000, գինը 8 կոպ.։*

*Գրքույկում հանրամատչելի կերպով շարադրվում են աշխատանքի նշանակության, նրա հասարակական բովանդակության և կազմակերպման հարցերը մինչկոմունիստական հասարակարգում և, հիմնականում, կոմունիզմին անցնելու շրջանում։ Հատուկ տեղ է տրված աշխատանքի նյութական ու բարոյական խթանների դերի ու նշանակության փոփոխմանը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մերձեցմանը՝ կապված կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և լիակատար կոմունիզմին անցնելու հետ։*

ԹՈԴՈՐ ՄՈՆՈՎ, Մահ չկա, *346 էջ, տպաքանակ 700, գինը 93 կ.։*

*Ժամանակակից բուլղար գրողի այս վեպն ընթերցողի առջև բացում է ուրույն ու հետաքրքիր մի աշխարհ. դա յոթհորատանցող թունելագործների աշխարհն է, որոնք ունեն իրենց կյանքն ու այդ կյանքում ապրելու իրենց կերպը։ Տարբեր են նրանք իրենց հոգեկան կերտվածքով ու նախասիրություններով։ Իսկական լիարյուն մարդիկ են նրանք, որ մերթ տխրեցնում են ընթերցողին, մերթ լիաթոք ծիծաղեցնում, մերթ անկեղծորեն ղառնացնում։ Բայց բոլորին միացնում է մի ձգտում՝ առաջինը միացնել թունելը, բարձր պահել հորատանցողի պատիվը։ Այդ է ահա, որ անպարտելի է դարձնում նրանց։ Նրանց համար մահ չկա։ Ինչ է մահը, երբ մարդ գիտի իսկապես սիրել ու տենչալ, պայքարել ու հասնել նպատակին։*

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 9

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 12267 Պատվեր 350 Տիրաժ 9353

Հանձնված է արտադրության 20/IV 1964 թ.:
Ստորագրված է տպագրության 6/V 1964 թ.:

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8:
Գինը 8 կոպ.: